բորդելէ յետոյ սահմանամերձ շրջաններու մէջ, Բերքիւք վերադարձաւ։

«Այս խորհրդաւոր ճամբորդութիւնները իմաստ մը ունին անշուշտ»։

## Ռումանիոյ համայնավար լրտեսները

Պուքրէշէն կը հեռագրեն.— Քանի մը օր տեւող դատավարութենէ մը վերջ, Պուքրէշի Պատերազմ. Ատեանի ընդհ. դատախազը իր ամբաստանագիրը կարդաց համայնավար լրտեսներու մասին։ Ցոյց տուաւ որ անտեսանելի ձեռք մը կը ղեկավարէր 35 ամբաստանեալները, որոնք ոեւէ նպատակ ալ չունին, քանի որ դրամ կը ստանային եւ իրենց գործունէութեան նպատակէն անտեղեակ էին։

Ընդհ. դատախազը իւրաքանչիւրին պատասխանատուութիւնը ճշդելով թիապարտութիւն պահանջեց հրամանատար Վէրցարի համար, 15 տարուան թիապարտութիւն երկրաչափ Սօլօմոնի եւ ֆրանսացի Անտրէ Փրօթթէնի համար, իսկ 5-15 տարուան թիապարտութիւն միւս ամբաստանեալներուն համար։

## Մոսկուայի դժգոհութիւնը

Բոլշեւիկեան Միջազգայինի 21րդ լիակատար նիստին մէջ նախագահը Մանուէլսկի մեծ դժգոհութեամբ խօսեցաւ Ֆրանսայի համայնավարներու գործունէութեան մասին.

Այս գործունէութիւնը ըստ կը փաստէ թէ անոնք անկարող են հաւաքելու զանգուածները, առօրեայ մտահոգութիւններու հիման վրայ, որոնք սակայն երեւան կուգան մասնաւորաբար ներկայ տագնապի ընթացքին։»

Մանուէլսկի ցոյց տուաւ թէ Ֆրանսայի համայնավարները չկրցան շահագործել գործաւորներու բուռն դժգոհութիւնը որ երեւան եկեր էր ընկերային ապահովագրութեանց օրէնքին կիրարկման հետեւանքով։

Մանուէլսկի բացատրեց նաեւ թէ համայնավարներու հիմնական գործը պիտի ըլլայ քանդել «փոքրագոյն չարիքի» տեսակէտը որ ընկերվարականներուն է։ Այս վերջինները՝ այդ տեսակէտէն մեկնելով կը հաւատեն թէ օրինակ՝ «Գերմանիոյ մէջ Պրիւնինկի կառավարութիւնը փոքրագոյն չարիք մըն է քան Հիթլէրեան ֆաշիստականութիւնը»։ Այս հիմերուն վրայ, Մանուէլսկի ուրիշ քննադատութիւններ ալ ուղղեց Ֆրանսայի համայնավարներուն։

## Աֆղանիստան կը զինուի

Աֆղանիստանի պատերազմական նախարարութեան պատկանող բեռնատար ինքնաշարժներ, Փէշավէրէն Քապուլ փոխադրեցին մեծ քանակութեամբ ֆրանսական զէնքեր եւ ռազմանիւթ։ Կը յուսացուի որ զէնքերու եւ ռազմանիւթի փոխադրութիւնը հազիւ կարելի պիտի ըլլայ վերջացնել 8 օրէն։

Կ՚ըսուի թէ վերջին եօթը ամիսներու ընթացքին 22000 զէնքեր եւ մեծ քանակութեամբ ռազմանիւթ փոխադրուած են Աֆղանիստան՝ անգլիական Հնդկաստանի ճամբով։

## "ՄԱՅԻՍ 28„Ը ԿԸ ՏՕՆՈՒԻ

ԼԻՈՆ

6 Յունիս Շաբաթ իրիկուն ժամը 8.30ին

Գ. Թաղապետարանի սրահին մէջ

կը նախագահէ՝ Վ. ՁՈՒԼԼԷՐԵԱՆ

կը խօսին՝ ՍԻՄՈՆ ՎՐԱՑԵԱՆ եւ Թ. ԱՅՎԱԶԵԱՆ

գեղարուեստական ճոխ բաժին։ Մանրամասնութիւնները տեղւոյն վրայ։

ՏԷՍԻՆ

7 Յունիս կիրակի կէսօրէ վերջ

## ՊԱՏՐԱՍՏՈՒԵՑԷՔ ՌՈՍՏՈՄԻ ՊԱՐԱՀԱՆԴԷՍԻՆ



## Հ. Յ. Դ.

ՓԱՐԻԶ

ՊԷՔՈՆԻ Մասիս խումբի հերթական դասախօսական ժողովը՝ այսօր երեքշաբթի երեկոյեան ժամը 8.30ին սովորական հաւաքատեղին՝ (Buvette de la Gareի սրահին մէջ), կը խօսի՝ ընկ. ՇԱՒԱՐՇ ՄԻՍԱՔԵԱՆ նիւթ՝ «Մեր քաղաքական հեռանկարները»։

## ՑՈՒՇԱՏԵՏՐ

ՄԱՐՍԷՅԼԻ Զարսանճաքի պատ. միութեան վիճաբանական ժողովը այս իրիկուն ժամը 8.30ին 12, 14 Rue Colbert, պար թաղայի սրահին մէջ, կը խնդրուի անդամագրուած եւ ոչ անդամագրուած հայրենակիցներէններկայ գտնուիլ։

## ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

— կը փնտռուի Զառացի (Սեբաստիա) Արուսեակ Ասլանեան որ 4 տարի առաջ Պաղտատի Հայոց եկեղեցիին պատին վրայ փակցուած գրութիւնով մը փնտռած է իր ազգականները, Այժմ 23 տարեկանէ, իմացնել R. Aslanianի, Dugradus par Ucel, Ardèche, France. իր ճշգրիտ հասցէն լուր տուողին 200 ֆր. նուէր։

— Մշոյ Ջոր Թաղեցի խորէն տէր Սահակ Փոսթօեան կը փնտռէ իր հօրեղբայրը Նալպանտ Քնիազի որդին Գեղամ։ Լուր կայ թէ ընդհանուր տեղահանութեան միջոցին ազատուելով մեկնած է Ամերիկա եւ հաստատուած է Ֆրէզնօ, կը խնդրուի հայրենակիցներէ իր հասցէն յայտնել Khoren Postoyanի, Usine de Menarde, St. Alban, La Grive, Isère, France.

կը խնդրուի արտասահմանեան թերթերէն արտատպել։

— Չէնկիլէրցի (Պրուսա) տիկին Մարիամ Ծերոնեան կը փնտռէ իր հօրաքրոջ զաւակը Պ. Յովհաննէս Պապիկեան (վաղեմի ուսուցիչ՝ Չէնկիլէրցի), կը կարծուի թէ այժմ կը գտնուի Մարսէյլ, իմացնել Madame Mariam Tzéronian. Cité Arméninne. Boulevard de la Madeleine, Nice. France.

DONVILLE-LS-BAINESի մէջ

Ծախու է կամ վարձու կը տրուի տուն մը՝ 5 փիէս եւ պարտէզ, վերջին ձեւի յարմարութիւններ, փլաժին եւ Granvilleի մօտ, դիմել՝ Publicité Metzl, 51 Rue Turbigo, No. 5484, Paris.




IMPRIMERIE - MASSIS - ÉDITIONS 208bis, Rue Lafayette Paris (10)

Le Gérant H STEPHAN

EMPIRE Սփիւռք-Հօլ՝ 37 Av. Wagram

*ԼՈՅՍ ՏԵՍԱՒ*

# ՌԷՆԻ
# ԳՆԴԱԿԱՀԱՐՈՒԱԾՆԵՐԸ

(*Վէպ՝ ռուսական մեծ յեղափոխութիւնից*)

*Դիմել՝* M. Altounian, 17 rue Ampère, Cachan (Seine)France

Ֆրանսա եւ գաղութներ 20 ֆր. ուրիշ երկիրներ 1 տոլար։



## ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

— *Աֆիոն Գարահիսարցի Գ. Օ. Յովսափեան եղբարք, կը փնտռեն իրենց հօրեղբորորդին Գրիգոր Յովսափեան (20 տարեկան), որ վերջերս Պոլիսէն Ֆրանսա եկած է։ Իմացնել՝* K. O. Hovassapian, 23 Rue de Guide Le Creusot (Sâone et Loire).



## ՈՒՇԱԴՐՈՒԹԻՒՆ

*Պաշտօնական մարմիններու ուղղուած ամէն տեսակ աղերսագրերու խմբագրութիւն, հարկային, ապահովագրական, Ֆրանսա մուտքի արտօնութեան,* ինքնութեան թուղթերու կանոնաւորման եւ նաթիւրալիզասիօնի *օրէնքներու վերաբերեալ խորհուրդներ։ Ամուսնական ձեւակերպութեանց արագ հետապնդում 15 օրուան մէջ։*

*ԴԻՄԵԼ՝ Խ. ԲԷՊԱՊՃԵԱՆի ամէն օր ժամը 10—12, 20* rue de Bezons à Courbevoie (Seine). Tél, Défense 0—39։



Le Gérant H STEPHAN

հութիւնը եւ հրովարտակներու կիրարկումը ցոյց տալով ընդդէմ բանուորկան շահերու։

Ընդդիմադիրները միշտ կը պնդեն խորհրդարանի գումարման անհրաժեշտութեան վրայ։

Ներքին դժուարութիւններու վրայ բարդուած են նաեւ արտաքին դժուարութիւններ։ Գերմանիոյ միջազգային քաղաքականութիւնը սկսած է տալ իր պտուղները։ Պետական դրամատան վարչական խորհուրդը որոշեց զեղչի պաշտօնական սակը բարձրացնել 5էն հարիւրին 7ի։

Այս որոշումը որ տրուած է մասնաւորաբար աւելի դժուար դարձնելու համար օտար դրամներու գնումը, հաւանութեանը արժանացած է քաղաքական եւ տնտեսական շրջանակներու։

Գերման կառավարութիւնը խորհրդակցութեան համար Պերլին հրաւիրած է Փարիզի, Հռոմի եւ Ուաշինկթընի իր դեսպանները, անոնց հետ ճշդելու համար հատուցման հարցին շուրջ կառավարութեան ընելիք կարգ մը դիմումները՝ համաձայնական պետութեանց։

⁂ Հողագործական Լիկային պատուիրակներու յանձնախումբը, բողոքի բանաձեւ մը քուէարկեց ընդդէմ երեւմտական հրովարտակներուն եւ կառավարութեան։ Բանաձեւը կը յայտնէ նաեւ թէ գերման ժողովուրդին ղեկավարութիւնը պէտք է յանձնուի վճռական մարդոց, որոնք կարենան կորովի քայլեր առնել՝ երկիրը փրկելու համար անել կացութենէն։

⁂ Էսսէնի ոստիկանութիւնը խուզարկութիւններ կատարեց համայնավարներու ակումբին մէջ։ 12 անձեր ձերբակալուեցան դաւադրութեան մեղադրանքով եւ բազմաթիւ փաստաթուղթեր գրաւուեցան։

## Բուռն վիճեր յոյն խորհրդարանին մէջ

Յոյն Երեսփ. Ժողովին մէջ, մամուլի նոր օրինագծի երկրորդ ընթերցման առթիւ, բուռն ու յուզումնալից վիճաբանութիւններ տեղի ունեցան կառավարութեան եւ ընդդիմադիրներու միջեւ։

Ամէնէն առաջ խօսք առաւ Նախարարապետ Պ. Վէնիզելոս, որ պաշտպանեց օրինագիծը։ Ընդդիմադիրները այնքան աղմկեցին որ նախագահն ստիպուեցաւ ընդհատել նիստը։ Ընդդիմադիրներու մէկ առաջարկը քուէի դրուելով մերժուեցաւ, ասոր վրայ անոնք հեռացան սրահէն իբր բողոքի ցոյց։

## Հինգ-վեց հարիւր հոգի խեղդուած

Սէն-Նազէրի ափերէն հինգ մղոն հեռու ծովային մեծ աղէտ մը սուգի մատնեց բազմաթիւ ընտանիքներ։ Կիրակի առտու 5.600 անձեր, բոլորն ալ աշխատաւորներ Նանթի շրջանէն, իրենց վարձած շոգենաւով նաւագնացութեան ելեր էին։ Կէսօրէն վերջ ժամը 3ին, կը վերադառնային, երբ բուռն փոթորիկ մը պայթեցաւ։ Կ'ենթադրուի թէ հովին ուժգնութեան դէմ պատսպարուելու համար, բոլորն ալ խուժեցին նաւուն մէկ կողմը, երբ մեծ ալիք մը շրջեց նաւը ու բոլորը մէկ ծովը թափեց։

Աղէտը նշմարուած ըլլալով ծովեզրէն, անմիջապէս երկու կոտ էր որ ազատարարներուն գործը չափազանց դժուարութեան կը մատնուէր։ Օգնութեան նաւերը Սէն Նազէր վերադարձան գիշերը, ժամը 11ին, 5-600 հոգիէն իրենց հետ բերելով միայն 8 ողջեր եւ 5 դիակներ։

## Համայնավարները կը կռուին Ռուպէի մէջ

Մեր նախորդ թիւով, կարգ մը մանրամասնութիւններ տուեր էինք Ռուպէի մէջ, համայնավարներու կողմէ կազմակերպած ցոյցերու մասին, որոնք յանգեր էին փողոցային կռիւներու։

Կռիւները շարունակուեցան յաջորդ օրն ալ։ Մուլթը կոխելուն տեղական իշխանութիւնները յարմար դատեր էին վճռական գործողութիւններու դիմել ընդդէմ համայնավարներուն, յաջորդ օրը, լուսաբացին եւ այդ մասին ալ խորհրդակցութիւններ կատարեր էին։

Այս զինադուլէն օգտուելով, համայնավարները հաւաքեր էին իրենց ուժերը եւ նոր պատրաստութիւններ տեսեր։ Սակայն, անոնց բնակած թաղը այնքան հանդարտ էր որ, պահ մը կարծուեր էր թէ կրքերը խաղաղած են եւ այլեւս որեւէ միջադէպ չպիտի պատահի։ Սակայն, երեկոյեան դէմ փոքր խումբեր սկսան կազմուիլ փողոցներու անկիւնը, խումբերը հետզհետէ սկսան իրարու միանալ ու թափօր կազմել, մինչեւ որ կ'երեւի, իբր շարժման ազդանշան, փողը հնչեց — սուլիչ մը — ու յեղափոխական թափօրը կարգով, առաջնորդութեամբ կարմիր դրօշիմըորկտոր մը լաթ էր ձողի մը կապուած սկսաւ շարժիլ մինչեւ որ հանդիպեցաւ ոստիկաններու ընդդիմութեան եւ կռիւն սկսաւ։

Ոստիկանները կարճ եւ ուժեղ յարձակումով մը, ցրուեցին ամբոխը, որ արագօրէն սկսաւ նահանջել դէպի իր թաղը, ճամբուն վրայ կոտրելով ապակիներ, օդային կազի լապտերներ եւայլն։ Իրենց թաղին մօտ, ցուցարարները յաջողեցան պատնէշ մը կանգնել զանազան առարկաներով, ինքնաշարժ մը որ իրենցը չէր, աթոռներ, սեղաններ եւն., ամէն տեսակ առարկայ վերջապէս, որ կրնար արգիլել ոստիկաններու անցքը։ Իսկ կէս գիշերուան մօտ, կրակի տուին պատնէշը։ Սակայն հեշէջ խումբը մարելէ յետոյ կրակը, թոյլ տուաւ որ ոստիկան-զօրքերը նոր գրոհով մը՝ իրենց տուները մղեն ցուցարարները։

Թաղը պաշարուած է ձիաւոր ոստիկաններու կողմէ։

## Միջազգային պարտքերը

Համաձայնական պետութիւնները Ամերիկայի վճարեցին իրենց պատերազմական պարտքերու հաշուէն 3 միլիառ ֆրանք։

Պատերազմական պարտքերու հարցը լրջօրէն կը մտահոգէ Ամերիկայի քաղաքական եւ ելեւմտական շրջանակները, որոնք ցարդ այս հարցը դուրս կը նկատէին հանրային հարցերու շրջանակէն։ Կը վարանին հրապարակաւ քննութեան ենթարկել պատերազմական պարտքերու հարցը, որովհետեւ ամերիկեան ժողովուրդը կը նկատէ թէ, երբ արտասահմանի մէջ այնքան եռանդով կը փափաքին ջնջուած տեսնել պատերազմական պարտքերը, այդ արդէն կը փաստէ թէ նման քայլ մը պիտի ըլլայ ի վնաս Ամերիկայի շահերուն։





# Հ. Յ. Դ.

**Փ Ա Ր Ի Զ**

ՊԸԲՈՆԻ Մասիս խումբի ժողովը այսօր Երեքշաբթի իրիկուն ժամը 8.30ին սովորական հաւաքատեղին։

**Գ Ա Ւ Ա Ռ**

ԼԻՈՆԻ կայծակ խումբի ժողովը վաղը չորեքշաբթի իրիկուն ժամը 8ին Հ. Յ. Դ. Նոր Ակումբին մէջ, 206 Rue Dugueselin:

ԼԻՈՆԻ Համազասպ խումբի ժողովը այսօր Երեքշաբթի իրիկուն ժամը 8.30ին Հ. Յ. Դ. Ակումբին մէջ։

ԼԻՈՆԻ Կուկունեան խումբի ժողովը վաղը Չորեքշաբթի իրիկուն ժամը 9ին Նիկողոսեանի ճաշարանը։ Ներկայանալ անդամատետրով։ Օրակարգ։ Պարտաւորիչ ներկայութիւն։



Ա. Ե. Հ. Կ. Խ. ՓԱՐԻԶԻ «ՄԱՆՈՒԿՆԵՐՈՒ ՊԱՇՏՊԱՆՈՒԹԻՒՆ»

Մասնաճիւղին տարեկան

**ԴԱՇՏԱՀԱՆԴԷՍԸ**

Յուլիս 12ին կիրակի օր: կը խնդրուի նկատի առնել



## ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

— Կարնեցի Քէրովբէ Տէր-Ներսէսեան կը փնտռէ իր եղբայրը Լեւոն Տէր-Ներսէսեանը (30 տարեկան), որ 1915ի եղեռնէն մինչեւ 1923 կը գտնուէր Մարտին։ Կը կարծուի թէ Հալէպ անցած է։ Տեղեկութիւն ունեցողներէն կը խնդրուի իմացնել՝ Frères Der-Nerssesian 38 Rue Lepic, Paris։ Կը խնդրուի արտասահմանի թերթերէն արտատպել։



## ՈՒՇԱԴՐՈՒԹԻՒՆ

Պաշտօնական մարմիններու ուղղուած ամէն տեսակ աղերսագրերու խմբագրութիւն, հարկային, ապահովագրական, Ֆրանսա մուտքի արտօնութեան, ինքնութեան թուղթերու կանոնաւորման եւ նաթիւրալիզասիօնի օրէնքներու վերաբերեալ խորհուրդներ։ Ամուսնական ձեւակերպութեանց արագ հետապնդում 15 օրուան մէջ։

ԴԻՄԵԼ՝ Խ. ՔԷՊԱՊՃԵԱՆԻ ամէն օր ժամը 10—12, 20 rue de Bezons à Courbevoie (Seine). Tél. Défense 0—39։



IMPRIMERIE - MASSIS - ÉDITIONS

208bis, Rue Lafayette Paris (10)

Le Gérant H STEPHAN

բնակչութիւնը եւ ժանաւանդ գործաւորները, ամրան ընթացքին։

Բոլշեւիկեան թերթ մը կը հաւաստէ թէ պատերազմի ընթացքին, Ռուսիա իր տրամադրութեան տակ պիտի կրնայ ունենալ 10 միլիոննոց կազմուպատրաստ բանակ մը եւ կը թելադրէ բանուորական զանգուածներուն որ պատրաստուին զինուորական ծառայութեան։

## Օգոստոս 1ը կարմիր օր

Գ. Միջազգայինի գործադիրը կոչ մը ուղղեց Եւրոպայի, Ասիոյ, Ամերիկայի համայնավար կուսակցութեանց, հրաւիրելով զանոնք որ Օգոստոս 1ին, իբր համաշխարհային պատերազմի յայտարարութեան տարեդարձ, ցոյցեր կազմակերպեն ընդդէմ դրամատիրական կարգերու եւ պետութեանց։

Գործադիրը կը հրահանգէ նկատի չառնել ոստիկանական հրամանները, որովհետեւ 1931ը պէտք է վճռական տարի մը ըլլայ ամբողջ աշխարհի մէջ համայնավարական յեղափոխութեան համար։

## Իտալեւռուս գործակցութիւնը

Գրեր էինք թէ իտալական պատուիրակութիւն մը բաղկացած մասնագէտներէ, ճարտարագէտներէ եւ դրամատէրներէ, մեկնած է Մոսկուա կարգ մը ուսումնասիրութիւններ կատարելու համար։ Այս առթիւ, «Իզվեստիա» բոլշեւիկեան թերթը կը գրէ թէ Իտալիոյ եւ Խորհ. Միութեան առեւտրական յարաբերութիւնները աւելի պիտի սերտանան եւ թէ Ռուսիա իր ճարտարարուեստական զարգացման համար, պէտք պիտի ունենայ Իտալացիներու արուեստագիտական փորձառութեան։

## Պայքար խորհրդային վաճառատարին դէմ

Պերլինի ամերիկեան նախկին դեսպանը Կէրարտ, մշակած է ծրագիր մը որ կը ձգտի պաշտպանել Միացեալ-Նահանգներու տնտեսութիւնը եւ հարուածել խորհրդային վաճառատարը։ Այս ծրագիրը արդէն հաւանութեան արժանացած է 600 կազմակերպութիւններու։ Կէրարտ կը շեշտէ թէ Միացեալ-Նահանգները կը գտնուին պատմութեան ամենէն մեծ տագնապներէն մէկուն առջեւ.

— Այս երկիրը կ'ըսէ ունի 6 միլիոն անգործ։ Ագարակապանները չեն կրնար իրենց բերքը ծախել շահաւոր գիներով։ Ռուսիա Ամերիկայէն խլեց իր ցորենի եւ քարիւղի շուկաները եւ պիտի խլէ նաեւ բամպակի շուկաները։ Ռուսիա ուրիշ շատ ապրանքներ եւս ինչպէս լուցկի, փայտ, ածուխ աւելի ցած գիներով կը ծախէ քան Ամերիկա։

«Պէտք է ուրեմն, կ'եզրակացնէ, կռուիլ ռուսական վտանգին դէմ, հաւաքական ծրագրով մը եւ հաւաքական ղեկավարութեամբ ուր իրենց ներկայացուցիչներն ունենան բոլոր ճիւղերու կազմակերպութիւնները։

## Պուլկարիոյ ընտրութիւնները

Կիրակի օր, Պուլկարիոյ մէջ սկսան խորհրդարանական ընտրութիւնները։ 15 քաղաքական խմբակցութիւններ ներկայացուցին իրենց թեկնածուները։ Կառավարականները շատ դըժուարին պայմաններու մէջ է որ կը գործեն։ Գլխաւոր քաղաքներու մէջ, կռիւներ տեղի ունեցան։

Այս կռիւներէն մէկուն ընթացքին սպաննուեցաւ երկրագործական պետերէն Պէրկերէֆ։ Ուրիշ երկրագործական երկու պետեր Թապաքով եւ Փավլօֆ խոշտանգուեցան Ռատոմիրի մէջ։ Իսկ Փրիսլավի մէջ նախկին պատերազմական նախարարը Սավոֆ ձերբակալուեցաւ։

Այսօր առնուած տեղեկութեանց համաձայն, թէեւ արդիւնքները տակաւին վճռական չեն, սակայն ընդդէմ կառավարական կուսակցութեան են։ Այս արդիւնքը կը բացատրուի Պուլկարիոյ տնտեսական տագնապով և ժանաւանդ վերջերս, արմտիքի գիներուն անկումով.որխոր դժգոհութիւն պատճառած է ընտրողներուն։

Միւս կողմը, կառավարական կուսակցութիւնը որ 7 տարիէ ի վեր իշխանութեան գլուխն է, ստիպուած է զօրեղ ընդդիմադիրներու դէմ պայքարիլ։ Սօֆիայի մէջ, քուէարկութեան փակումէն յետոյ, սպաննուեցաւ Մակեդոնիացի մը եւ վիրաւորուեցաւ անոր ընկերացող մէկը։

## Աւստրիոյ դահլիճին կազմութիւնը

Նախորդ վարչապետ Էնտէրէն վերջ, գերապայծառ Զայփէլ եւս ձախողեցաւ դահլիճը կազմելու իր յանձնառութեան մէջ, որուն վրայ. Նոյն գործը յանձնուեցաւ Պուրէշի որ կազմեց իր դահլիճը։ Հին դահլիճն է սակայն որ միայն վարչապետին եւ ելեւմտական նախարարին փոփոխութեամբ, կը կազմէ նորը։

## Բացում եգիպտական խորհրդարանին

Առանց միջադէպի, Ֆուատ Թագաւոր բացումը կատարեց եգիպտական խորհրդարանին։ Իր բացման ճառին մէջ, Թագաւորը յիշելէ վերջ ներկայ կառավարութեան թափած ջանքերը, բաղձանք յայտնեց ամրացած տեսնելու Եգիպտոսի եւ օտար պետութեանց յարաբերութիւնները։ Շեշտեց մասնաւորաբար անգլեւեգիպտական համաձայնութեան անհրաժեշտութիւնը, որ երկու երկիրներու շահերը պահպանելով, Եգիպտոսի պիտի ապահովէ թէ անկախութիւն եւ թէ փոխադարձ երաշխիքի եւ գործակցութեան օգուտները։

**Հայրենիք** ամսագրի այս տարուան յունիսի թիւը հետեւեալ բովանդակութեամբ.—

*Ա. Ահարոնեան*՝ Ծիծեռնակի բոյնը։ *Ա. Աճէմեան*՝ Ես կը դրկեմ քեզի ընծայ։ *Տարագիր*՝ Մարի Ալմոյեան։ *Մ. Մանուկեան*՝ Գիւղի կարօտ։ *Համաստեղ*՝ Սպիտակ ձիաւորը։ *Ուխտաւոր*՝ Սեպտեմբերի իրիկուն։ *Ռէն*՝ Ոլբերը։ *Արմէն Անոյշ*՝ Թափուր է հոգիս։ *Արսէն Երկաթ*՝ Եգիպտոս։ *Ա. Տիգրանեան-Ահարոնեան*՝ Բանաստեղծութիւններ։ *Շրջիկ*՝ Հ. Ասատուր։ *Վ. Սօֆեան*՝ Ցուէք...։ *Խ. Զաւէն*՝ Կեանքիս մատաղ գարունքին։ *Փրոֆ. Ն. Ադոնց*՝ Վասիլ Հայազն։ *Ա. Ջամալեան*՝ Ընկերվարական ծրագիրների փոփոխութիւններ։ *Ռուբէն*՝ Արաբական աշխարհի մէջ։ *Անդրանիկի յուշերը*։ *Տիգրան*՝ Շատախի ինքնապաշտպանութիւնը։ *Կարէն*՝ Արեւմտահայ գաղութ մը Կովկասի մէջ։ *Ա. Աբեղեան*՝ Հայագիտութիւնը անցեալում եւ ներկայում։ *Ա. Աթան*՝ Հայ կեանքը (ամսական տեսութիւն)։ *Ա. Խոնդկարեան*՝ Գրախօսական Մալխասի «Ապրումներ»ու մասին։ *Յ.*՝ Ամերիկահայ կեանք (ամսական տեսութիւն)։





















## ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

— Կը փնտռեմ հայրս Թէքմէնցի (Կէմէրէկի շրջան) Արթին Մովսէսեան որ 1915ին հայ կամաւորներու հետ աքսորուած է Ուզուն Եայլա ուր մնացած է մինչեւ 1917։ Կը փնտռեմ նաեւ մայրս Ֆիլօր եւ եղբայրս Նազար Մովսէսեան որոնք աքսորուած են Ուզուն Եայլա եւ մինչեւ 1919 կը գտնուէին Ազիզիէի մօտ։ Իմացնել Երուանդ Մովսէսեանի, Rue de Grand Madir, La Ciotat, B. du Rhône), France.

— Կը փնտռուին Թոքատի Գրիգորիոս գիւղէն Ոսկեան եւ Խաչիկ Չոլաքեաններ։ Ժամանակին Յունաստանի որբանոցին մէջ կը գտնուէին. կը կարծուի թէ այժմ կը գտնուին Ֆրանսա։ Ասոնց մօտիկ ազգականներ կը գտնուին Թոքատ։ Ասոնց մասին լուր ունեցողներէն կը խնդրուի իմացնել՝ Պ. Միսաք Տէրտէրեանի 27 Bld. Garibaldi, Issy les-Moulineaux, Seine. France.

— *Թաւրիզէն Պ. Գեղամ Ադիկեան կը փնտռէ Սալմաստցի Տիրան Սալմաստեան։ Կը կարծուի թէ այժմ կը գտնուի Ֆրանսա։ Իմացնել՝* Saboundjian *եղբայրներ 39* Rue de Trévise. Paris (9).

— Օր. Գոհար Քէսկինեան կը փնտռէ իր եղբայրը Զէյթունի Կէպէն գիւղացի Մինաս Քէսքինեան, հօր անունը՝ Խաչիկ, մօր անունը՝ Մարիամ։ 7 տարի առաջ Մինաս իր քրոջ հետ կը գտնուէր Անգլիական որբանոցը։ Իր հասցէն գիտցողներէն կը խնդրուի իմացնել վերապատուելի Ղազարոսեանի, 7 Rue Papère, Marseille














IMPRIMERIE - MASSIS - ÉDITIONS

208bis, Rue Lafayette Paris (10)

Le Gérant H STEPHAN

Նախարարը, հոլանտական դեսպանը, ժարաջախտ Լիոթէյ։ Կէսօրին հասան նաեւ հոլանտական գահաժառանգրեւ իշխանուհի Յուլիանա։

Վնասը կը հաշուեն յիսուն միլիոն ֆրանք։ Հրդեհը մոխրացուց բազմաթիւ թանկագին հաւաքածոներ հոլանտական գաղութէն, եւ զանազան թանգարաններէ բերուած արժէքաւոր առարկաներ։

Տումէր ցաւակցութիւն յայտնեց Հոլանտայի։

## Պուլկարիոյ դահլիճը փոխուած

ՍՈՖԻԱ, 29 յունիս.— Լիափչէֆ թագաւորին ներկայացուց իր դահլիճին հրաժարականը։ Թագաւորը անմիջապէս կանչեց Մալինոֆը, որուն հետ խորհրդակցեցաւ պահ մը քաղաքական ներքին կացութեան մասին, որ ստեղծուեցաւ վերջին ընտրութիւններէն յետոյ։ Եւ Մալինոֆի յանձնեց նոր դահլիճը կազմելու պաշտօնը։

Մալինոֆ յաջողեցաւ կարճ ժամանակի մը մէջ կազմել իր դահլիճը, այսպէս.— Մալինոֆ՝ վարչապետ եւ արտաքին նախարար, Մուշանոֆ՝ ներքին, Կերկինէֆ՝ ելմտական, Մուրավիէֆ՝ կրթական, Կիչէֆ՝ հողագործական, Ուրտանոֆ՝ հանրօգուտ շինութեանց, Փեթրոֆ՝ առեւտրական, Վարպինոֆ՝ դատական, Քորսթուրքոֆ՝ հաղորդակցութեանց, զօրավար Քիսոֆ՝ պատերազմական։



# Հ. Յ. Դ.

ԳԱՒԱՌ

ԼԻՈՆԻ Կայծակ խումբի ժողովը վաղը Չորեքշաբթի իրիկուն ժամը 8ին, Հ. Յ. Դ. Ակումբին մէջ։ Բոլոր ընկերներուն ներկայութիւնը պարտաւորիչ է։ Կարեւոր օրակարգ։

ԼԻՈՆԻ Պատ. Միութիւնը խորհրդակցութեան կը հրաւիրէ այս Հինգշաբթի իրիկուն ժամը 8.30ին Կուկունեան, Համազասպ եւ Կայծակ խումբերու լիազօր ներկայացուցիչները։ Ներկայ կ'ըլլայ կոմիտէի ներկայացուցիչը։

---

Հ. Յ. Դ. Փարիզի կոմիտէն իր ցաւակցութիւնները կը յայտնէ Տէրպէտէրեան ընտանիքին

ԸՆԿ. Մ. ՏԷՐՊԷՏԷՐԵԱՆԻ

մահուան առթիւ։

---

Սանասարեան Սաներու Միութիւնը իր խորին ցաւակցութիւնները կը յայտնէ իր հիմնադիր անդամ

Մ. ՏԷՐՊԷՏԷՐԵԱՆԻ

դառնաղէտ մահուան առթիւ։

---

Սեբաստիոյ Գոչ Հիսար գիւղի Հայր. Միութեան Մարսէյլի մասնաճիւղը իր խորին ցաւակցութիւնը կը յայտնէ իր հայրենակից Սիմոն Զամանեանի որ դժբախտութիւնը ունեցաւ 12 օրուան մէջ կորսնցնելու իր կինը

ՇՈՒՇԱՆԻԿ ԶԱՄԱՆԵԱՆ

(ծնեալ՝ Տէր Պապեան, Խորսանացի, 23 տարեկան) եւ իր զաւակը փոքրիկն Մարիամ։

## ՑՈՒՇԱՏԵՏՐ

ՄԱՐՍԷՅԼԻ Զարսանճաքի Պատ. միութեան ընդհ. ժողովըայսօրեւ բեքշաբթի երեկոյ ժամը 8ին, բիւ գօլպէր, Պար-Թապայի սրահին մէջ։ կարեւոր օրակարգ։

## ՆԱՄԱԿԱՏՈՒՓ

ՍՏԱՑԱՆՔ ՖՐԱՆՔ

Շաս, Պ. Ա.— 25։
Տիկուան, Ս. Ս.— 35։
Սէն Ժէովէ, Իշխ. Ա.— 70։
Սէն Մօրիս, Պ. Տ.— 162։
Բլէռմոն, Զ. Ե.— 35։
Փիւժէ Սիւր Արժան, Կ. Մ.—70։

## ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

— Պրուսայի որբերէն Յակոբ Մութաֆեան (նախկին մականունը Գրիգորեան) կը փնտռէ իր վարպետը Պրուսացի դերձակ Նուպար Էնկիւրլեանը։ Իմացնել՝ H. Moutafianի, Odos Tivon No. 97, Kokinia, Le Pirée, Grèce.

— Խաչէր Կէտիկեան (Ֆըրանսա) կը փնտռէ իր քոյրը Ցընտըճագցի (Մարաշի շրջան) Ազնիւ (նախկին անունը Կիւրճի) որ այժմ կը գտնուի Փարիզ։ Իր հասցէն գիտցողներէն կը խնդրուի իմացնել Յովսէփ Կէտիկեանի, Chez Mr. Bury René au Moulin mestifier, Maves (Loir et Cher). France.

## ՄԱԿԵԴՈՆԻՈՅ ՈՐԲԵՐՈՒՆ ՀԱՄԱՐ

(Հանգանակուած Մարսէյլի մէջ, Սերովբէ Տիրատուրեանի ձեռքով).

Ս. Տիրատուրեան 50, Mr. Maurice Obegi 50, ընկերներ Գաբրիէլ եւ Թորոս 30, Ա. Մուշեղեան 25, Բրուտեան եղբայրք 25, Mr. Albert Jullien. M. G. François, Կ. Կիրակոսեան, Mr. Fonta Fontan, Վ. Եազըճեան, Գ. Պոտուրեան 20ական, Mr. V. Oleweski 15, Mr. V. Bolom, Պ. Պ. Ա. Մօմճեան, Թ. Տիրատուրեան, Յ. Պալթաեան, Վ. Զարուկեան, Գ. Փիլիպոսեան, Տ. Մուշեղեան, Ե. Արմէն, Յ. Զարըգճեան, Գ. Ուռեան, Խ. Սիլիճեան, Միսկեան, Թ. Տէրմէրկէրեան, Ոմն, Հ. Յովակիմեան, Գ. Պարոնեան, Գ. Յարութիւնեան, Խ. Յովսէփեան, Կ. Մամուզեան, Տ. Խաչիկեան, Mr. Palermo, Ա. Խորիկեան, Մ. Սվազլեան, Լ. Խալարեան, Կ. Թադէոսեան, Յակոբ Թարագճեան, Գ. Մալիկեան, Նավալեան եղբարք 10ական, Գ. Թ. Ս. Գործաւորներէն 20, Mlle D. Santi. Mr. G. Sina Kaserman, Տիկ. Լ. Սահակեան, Ա. Շաթըրեան, Մ. Եուսուֆեան, Ն. Օհանեան, Յ. Կարապետեան, Mr. Jean Boradies, Օր. Հ. Մէտարեան, Mlle Thérèse, Ս. Յակոբեան, Զ. Գավէզեան, Գ. Ալթունեան 5ական, Ս. Չէմէնեան 10, Տիկ. Մ. Պալեան 7 ֆր.։ Գումար 707 ֆր.։ Խմբ.— Տես «Յառաջ» 26 Յունիս)։

**Վարձու է** Ալֆորվիլի մէջ գեղեցիկ խանութ մը, յարմար ամէն գործի։ Մանրամասնութեանց համար դիմել Տիկին Միրզաեանի, 136 Rue Etienne Dolet, Alfortville, (Seine).

**Վարձու է** 17րդ Թաղամասին մէջ, երրորդ յարկ, փողոցի վրայ, յարկաբաժին մը 3 փիէս, խոհանոց, W. C. տէպարա, ջուր, կազ, ելեկտրականութիւն։ Մէթրօ՝ La Fourche կամ Brochant. Մանրամասնութեանց համար դիմել առաւօտները, ժամը 9.30—12, Տալկըճեանի, 7 rue Berger. Փարիզ (9).

**Հաշուակալ** ծեր հաշիւներուն քննութեան, կանոնաւորման, հաշուեկշռի պատրաստութեան համար դիմեցէք Պ. Տալկըճեանի, 7 Rue Berger, Փարիզ (9).

**Վարձու է** կահաւորուած սենեակ մը Place Pigalleի մօտ, կարասիները գնելու պայմանաւ տարեկան վարձք 1200 ֆրանք։ Ջուր, կազ, ելեկտրականութիւն։ Մանրամասնութեանց համար գրել Փափազեանի, 41 Rue St. Denis, Asnières, Seine.

## ՈՒՇԱԴՐՈՒԹԻՒՆ

Պաշտօնական մարմիններու ուղղուած ամէն տեսակ աղերսագրերու խմբագրութիւն, հարկային, ապահովագրական, Ֆըրանսա մուտքի արտօնութեան, ինքնութեան թուղթերու կանոնաւորման եւ նաթիւրալիզասիոնի օրէնքներու վերաբերեալ խորհուրդներ։ Ամուսնական ձեւակերպութեանց արագ հետապնդում 15 օրուան մէջ։

ԴԻՄԵԼ՝ Խ. ՔԷՊԱՊՃԵԱՆի ամէն օր ժամը 10—12, 20 rue de Bezons à Courbevoie (Seine). Tél, Défense 0—39.



## ԴԱՇՏԱՀԱՆԴԷՍ

Սեբաստիոյ Դաւրա գիւղի Հայր. Միութեան կողմէ 12 յուլիս կիրակի կէսօրէ վերջ Սէն Քլուի անտառին մէջ։

Նկատի ունենալ այդ թուականը։

## ԲԱԺԱԿԻ ՄՐՑՈՒՄ ՎԻԷՆԻ ՄԷՋ

Հ. Մ. Ը. Մ.ի Վիէնի մասնաճիւղին կողմէ Օգոստոս 16ին։ Մանրամասնութիւնները մօտ օրէն։



IMPRIMERIE - MASSIS - ÉDITIONS

208bis, Rue Lafayette Paris (10)

Le Gérant H. STEPHAN